ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՍՌՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՋՈԿԱՏՆ Է

*Հանճարեղ Լենինի կողմից 50 տարի առաջ ստեղծված Սովետական Միության Կոմունիստական պարտիան աճել և դարձել է վիթխարի ուժ, կոփվել է մարտերում Լենինի, Լենինի աշակերտ ու նրա գործի շարունակող մեծ Ստալինի և նրանց զինակիցների ղեկավարությամբ։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան մեր երկրի ժողովուրդներին տանում է հաղթանակից հաղթանակ, հավատարիմ իր կոչմանը՝ առաջնորդում է նրանց դեպի կոմունիզմ։*

*Կոմունիստական պարտիան համախոհ կոմունիստների կամավոր մարտական միություն է, որ կազմակերպված է բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիների, աշխատավոր ինտելիգենցիայի մարդկանցից։ Կոմունիստական պարտիան ՍՍՌՄ աշխատավորության առաջավոր, գիտակից ջոկատն է, սովետական ժողովրդի քաղաքա-*

կան ղեկավարը, կազմակերպիչն ու դաստիարակը, մեր հասարակության ուղղություն տվող և ղեկավար ուժը։

Կոմունիստական պարտիան իր ամբողջ գործունեության ընթացքում ղեկավարվում է Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի մեծ ուսմունքով, որը բանվոր դասակարգի, ամբողջ աշխատավորության արմատական շահերի գիտական արտահայտությունն է։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ պարտիայի անպարտելիության, նրա ուժի և հզորության կարևորագույն աղբյուրը աշխատավոր մասսաների լայն խավերի հետ, ժողովրդի հետ ունեցած անխախտ կապն է։ Պարտիան անպարտելի է, եթե նա սերտ կապ է հաստատում աշխատավորների ամենալայն մասսաների հետ, և ընդհակառակը, նա կպարտվի, եթե պարփակվի իր ներպարտիական կեղևի մեջ, եթե կտրվի մասսաներից։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան առաջացել է նախառևոլյուցիոն Ռուսաստանում բանվորական շարժումների հիման վրա, որպես աշխարհում ամենառևոլյուցիոն պրոլետարիատի պարտիա։ Նա դուրս է եկել ժողովրդական մասսաների ըն-



դերքից, աճել և աճում է ժողովրդի լավագույն մարդկանց հաշվին։ Մեր պարտիան իր մեջ մարմնավորում է սովետական ժողովրդի լավագույն հատկությունները, արտահայտում և իրականացնում է ժողովրդի միլիոնավոր մասսաների լավագույն ցանկությունններն ու ձգտումները։

Կոմունիստական պարտիան սոցիալիստական գիտակցության բարձրացրեց մեր երկրի աշխատավորներին, կազմակերպեց և քաղաքականապես կոփեց նրանց՝ շահագործողների դեմ մղված պայքարում, սոցիալիզմի համար մղված պայքարում։ Մեր պարտիան կազմակերպելով բանվոր դասակարգի և աշխատավորության դաշինքը, 1917 թվականի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ հասավ կապիտալիստների ու կալվածատերերի իշխանության տապալմանը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմանը, կապիտալիզմի լիկվիդացմանը, մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացմանը և ապահովեց սոցիալիստական հասարակարգի կառուցումը։ Մեր երկրում շահագործող դասակարգե-

րի լիկվիդացման հետևանքով Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ամրապնդվեց սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, որը, ինչպես և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունն ու սովետական հայրենասիրությունը, մեր հասարակության զարգացման հզոր շարժիչ ուժն է։

Իր առաջավոր ջոկատի՝ Կոմունիստական պարտիայի կողմից ոգեշնչվող ու կազմակերպվող սովետական ժողովուրդը, ցուցաբերելով մեծագույն ստեղծագործական ակտիվություն, իրագործեց համաշխարհային պատմական նշանակություն ունեցող սոցիալ-տնտեսական վիթխարի վերափոխումներ, ապահովեց մեր Հայրենիքի պաշտպանությունը միջազգային իմպերիալիզմի հարձակումներից, պաշտպանեց նրա ազատությունն ու անկախությունը։

Հետպատերազմյան տարիներին սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ արագ վերականգնեց պատերազմի հետևանքով տուժած տնտեսությունը, հասավ էկոնոմիկայի ու կուլտուրայի նոր հզոր վերելքի, սոցիալիստական պետության հզորության ամրա-



պընդման, ժողովուրդների խաղաղության և անվտանգության հզոր պատվար ՍՍՌՄ-ի միջազգային հեղինակության վիթխարի աճի։

Այժմ Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին ոգեշնչում և կազմակերպում է պայքարելու հանուն կոմունիզմի կառուցման, սովետական ժողովրդի ստեղծագործական հզոր եռանդը ուղղում է գլխավոր խնդիրների լուծման նպատակին, այն է՝ իրականացնել աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելը, անընդհատ բարձրացնել հասարակության նյութական և կուլտուրական մակարդակը, հասարակության անդամներին դաստիարակել ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավորների հետ եղբայրական կապեր հաստատելու ոգով, ամեն կերպ ամրապնդել սովետական Հայրենիքի ակտիվ պաշտպանությունը նրա թշնամիների ագրեսիվ գործողություններից։

Մեր երկրում կոմունիզմի կառուցման ուղղությամբ վիթխարի առաջընթաց քայլ կհանդիսանա ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ 19-րդ համագումարի դիրեկտիվ-

ների կատարումը։ Նոր հնգամյա պլանը նախատեսում է սովետական երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի նոր վերելք, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի նշանակալից աճ։

Հնգամյակի վերջում արդյունաբերական արտադրանքի թողարկումը, 1940 թվականի համեմատությամբ, ավելանալու է երեք անգամ։ 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, պողպատի արտադրությունը կաճի ավելի քան երկու անգամ, ածխինը՝ 93 տոկոսով, նավթինը՝ 70 տոկոսով, էլեկտրաէներգիայինը՝ 2,8 անգամ։

Կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդման, նրանց հասարակական արտադրության անընդհատ աճի, գյուղատնտեսության տեխնիկական զինվածության ուժեղացման հիման վրա նախատեսվում է հնգամյակի ընթացքում հացահատիկի համախառն բերքն ավելացնել 40—50 տոկոսով, անասնաբուծության արտադրանքը՝ մսինը և խոզաճարպինը՝ 80—90 տոկոսով, կաթինը՝ 45—50 տոկոսով, բրդինը՝ մոտավորապես 2—2,5 անգամ։



Սոցիալիստական արտադրության բազմակողմանի զարգացման շնորհիվ ազգային եկամուտը ՍՍՌՄ-ում հնգամյակի ընթացքում կմեծանա ոչ պակաս, քան 60 տոկոսով։ Այդ կապակցությամբ բանվորների և ծառայողների աշխատավարձը կբարձրանա առնվազն 35 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտները առնվազն 40 տոկոսով։

Սովետական երկրի ժողովուրդները միահամուռ հավանություն են տալիս և ջերմորեն պաշտպանում Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը

Պարտիայի, կառավարության և սովետական ժողովրդի անխորտակելի միասնության նոր հզոր ցույց էր օրերս տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան, որը հաստատեց Սովետական պետության 1953 թվականի բյուջեն։ Սովետական ժողովուրդը սեսիայի որոշումները դիմավորեց մեծ գոհունակությամբ, դիտելով այն որպես մի խոշոր քայլ մեր Հայրենիքի տնտեսական ու քաղաքական հզորացման հետագա ամրապնդման ուղղությամբ։

Հետևողականորեն իրականացնելով լենինյան-ստալինյան ազգային քաղաքականու-

թյունը, պարտիան ղեկավարում է սովետական ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացումը։

ՍՍՌՄ ժողովուրդների մեծ ընտանիքում, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, աննախընթաց վերելք է ապրում նաև հայ ժողովուրդը։ Կոմունիստական պարտիան հայ ժողովրդի մեծ ազատարարն է, որի գլխավորությամբ իր երկրում Սովետական իշխանություն հաստատելով, կամավոր կերպով մտնելով ՍՍՌՄ մեջ, նա ձևավորվեց որպես նոր, սոցիալիստական ազգ։ Սովետական Հայաստանը այժմ դարձել է զարգացած արդյունաբերության, կոլտնտեսային գյուղատնտեսության և ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի երկիր։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը հինգերորդ հնգամյակի առաջին երկու տարում աճել է 30 տոկոսով և 1952 թվականին գերազանցել է 1940 թվականի մակարդակը ավելի քան երեք անգամ։

Կոմունիստական պարտիան իր բարձրագույն պարտքը տեսնում է ժողովրդին ծառայելու մեջ, ժողովրդի բարօրության նըրկատմամբ, նրա նյութական և կուլտուրա-



կան հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման նկատմամբ անդուլ հոգատարության մեջ։ Մշակելով իր քաղաքականությունը, որը սովետական հասարակության զարգացման կենսական հիմքն է, պարտիան միշտ ելնում է աշխատավորության շահերից, մեր երկրում կոմունիզմի կառուցման շահերից։ Ջերմ հոգատարությունը ժողովրդի բարօրության և երջանկության մասին՝ բարձրագույն օրենք է Կոմունիստական պարտիայի համար։

Իր քաղաքականությունը հաջողությամբ իրականացնելու համար Կոմունիստական պարտիան ուղղություն է տալիս բոլոր պետական և հասարակական կազմակերպություններին, ղեկավարում է նրանց գործունեությունը, նրանց միջոցով կապվում է աշխատավորական լայն մասսաների հետ։ ՍՍՌՄ-ի քաղաքական հիմքը կազմող աշխատավորների դեպուտատների Սովետները պարտիային կապում են աշխատավորության միլիոնավոր մասսաների հետ՝ պետական աշխատանքի գծով, պրոֆմիությունները՝ արտադրական գծով, կոոպերացիան՝ ամենից առաջ տնտեսական գծով, գյուղա-

ցիությանը սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու գծով։ Լենինյան կոմերիտմիության միջոցով պարտիան իրականացնում է նոր սերնդի, երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը։

Ղեկավարելով աշխատավորության) մյուս բոլոր կազմակերպությունների աշխատանքը, Սովետական Միության Կոմունիստական պարտիան հանդես է գալիս որպես սովետական հասարակության հիմնական ուղղություն տվող մեծ ուժ։

Կոմունիստական պարտիայի ղեկավար դերը մեր երկրում ամրապնդված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայով, որտեղ գրանցված է, որ բանվոր դասակարգի շարքերից ու աշխատավորների մյուս խավերից ամենից ավելի ակտիվ ու գիտակից քաղաքացիները համախմբվում են Կոմունիստական պարտիայի մեջ, որն աշխատավորների առաջավոր ջոկատն է սոցիալիստական հասարակությունն ամրապնդելու և զարգացնելու համար նրանց մղած պայքարում և աշխատավորների բոլոր, ինչպես հասարակական,



այնպես էլ պետական կազմակերպությունների ղեկավար կորիզն է ներկայացնում։

Իր բազմամյա փորձով սովետական ժողովուրդը համոզվել է, որ Կոմունիստական պարտիան վարում է ճիշտ քաղաքականություն, հետևողականորեն պաշտպանում է ժողովրդի կենսական շահերը և դրա համար էլ մեր ժողովուրդը սիրում է իր հարազատ պարտիան, լիովին վստահում է նրան, ակտիվորեն պայքարում է նրա քաղաքականության կենսագործման համար։

Մասսաների հետ պարտիայի կապերի և սովետական ժողովրդի մեջ նրա հեղինակության ամրապնդման փայլուն վկայությունն է պարտիայի շարքերի աճը։ Եթե 18-րդ համագումարի պահին (1939 թ. մարտ) պարտիան իր շարքերում ուներ 2.477.666 մարդ, ապա 19-րդ համագումարի պահին, առ 1-ն հոկտեմբերի 1952 թվականի, պարտիայի մեջ էին գտնվում 6.882.145 մարդ.

Սերտորեն համախմբված մարտերում կոփված իր ավանգարդի, առաջավոր ջոկատի՝ Կոմունիստական պարտիայի շուրջը, սովետական ժողովուրդը իր ամբողջ եռանդը ներդնում է մեր երկրում կոմունիստական շինարարության խնդիրները լուծելու նպա-

տակին։ Կոմունիզմի կառուցման գործը հաջողությամբ առաջ տանելու, աշխատավորության բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա աճն ապահովելու համար պարտիան աշխատավորությանը դաստիարակում է սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով, անխնա պայքար է մղում նացիոնալիզմի և կոսմոպոլիտիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության խախտումների և խեղաթյուրումների դեմ։

Կոմունիստական պարտիան սովետական մարդկանց սովորեցնում է չմոռանալ կապիտալիստական շրջապատման մասին, որի դեմ վառոդը միշտ պետք է չոր պահել, լինել զգոն և աչալուրջ, մեր թշնամիների ամեն տեսակի մեքենայությունների դեմ մղվող պայքարում ցուցաբերել հաստատակամություն և անհաշտություն։

Կոմունիստական պարտիան առաջնահերթ նշանակություն է տալիս իդեոլոգիական աշխատանքին, պահանջում է տիրապետել



մարքսիստական-լենինյան թեորիային, կարողանալ կիրառել այդ թեորիան գործնական հարցերը լուծելիս։ Աշխատանքում եղած թերությունների ու սխալների վերացման համար պարտիան պահանջում է սովետական մարդկանցից լայնորեն ծավալել ինքնաքննադատությունն ու հատկապես ներքևից եկող քննադատությունը։

Աչալուրջ պահպանելով իր շարքերի միասնությունն ու համախմբվածությունը, ընդարձակելով ու ամրապնդելով իր կապերը ժողովրդի հետ, Սովետական Միության Կոմունիստական պարտիան մեր երկրի աշխատավորությանը վստահորեն առաջ է տանում դեպի կոմունիզմի հաղթանակը։

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

(Պատմական գիտությունների թեկնածու)

---

## ՍՍՌՄ 1953 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան հաստատեց մեր երկրի 1953 թվականի պետական բյուջեն, որի հիմնական խնդիրն է՝ անհրաժեշտ միջոցներով ապահովել ժողովրդական տնտեսության զարգացման և ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման այն մեծ ծրագրի կատարումը, որը այս տարվա համար նախատեսել է Սովետական կառավարությունը՝ ՍՄԿԿ 19-րդ համագումարի պատմական որոշումներին համապատասխան։

Բյուջեում հաստատված են եկամուտներ 544 միլիարդ 264 միլիոն 720 հազար ռուբլի, իսկ ծախսեր՝ 530 միլիարդ 532 միլիոն 48 հազար ռուբլի, ծախսերի նկատմամբ եկամուտները գերազանցում են 13 միլիարդ 732 միլիոն 672 հազար ռուբլով։

ՍՍՌՄ 1953 թվականի պետական բյուջեի ծախսերը 1952 թվականի համեմատությամբ աճել է 70,3 միլիարդ ռուբլով կամ 15,3 տոկոսով։



Սեսիան բյուջետային միջոցների հատկացումները կատարել է հետևյալ կերպ՝ ժողովրդական տնտեսությանը հատկացված է 192 միլիարդ 489 միլիոն 527 հազար ռուբլի և բացի դրանից ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին 97 միլիարդ 973 միլիոն 810 հազար ռուբլի, ընդամենը 290 միլիարդ 463 միլիոն 337 հազար ռուբլի։

Սեսիան խոշոր հատկացումներ է կատարել արդյունաբերության զարգացման համար։ Բացի արդյունաբերական ձեռնարկությունների սեփական միջոցներից 82 միլիարդ 600 միլիոն ռուբլի ծախսվելու է արդյունաբերության և ամենից առաջ ծանր ինդուստրիայի ֆինանսավորմանը։ Այդ միջոցների զգալի մասն օգտագործվում է արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության, արդյունաբերությունը նոր կատարյալ մեքենաներով ու մեխանիզմներով հագեցնելու համար։

Այդ միջոցառումների շնորհիվ 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ծավալը կավելանա մոտավորապես երկու և կես անգամ։

Մեծ ուշադրություն է նվիրված գյուղատնտեսության հետագա զարգացմանը, գյուղատնտեսությունը նոր տեխնիկայով հագեցնելու գործին, այն բանին, որպեսզի մեր կոլտնտեսություններում և սովխոզներում էլ ավելի մեծ չափով ավելանա գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը։

Բացի սեփական միջոցներից, 1953 թվականի բյուջեից 39 միլիարդ 900 միլիոն ռուբլի հատկացված է գյուղատնտեսության զարգացման ու մթերումների ասպարեզում ձեռնարկվող միջոցառումների համար։ Այդ գումարից ընթացիկ տարում մեծ ծախսեր կկատարվեն անասնաբուծության, բանջարաբուծության հետագա զարգացման, ՄՏԿ-ները և սովխոզները մեծ քանակությամբ նոր տրակտորներով, կոմբայններով և նորագույն այլ տեխնիկայով հագեցնելու համար։

Գյուղատնտեսության գծով միջոցառումներ անցկացնելու կապակցությամբ լրացուցիչ ծախսերը ընթացիկ տարվա բյուջեում կազմում են 13 միլիարդ 591 միլիոն ռուբլի։ Այդ գումարից 6 միլիարդ 460 միլիոն ռուբլի հատկացված է անասնաբուծության մթերքների մթերման ու գնման գների բարձրացման և անասնաբուծության բնագավառի այլ միջոցառումների համար, իսկ 2 միլիարդ 365



միլիոն ռուբլի մեքենատրակտորային կայանների ամրապնդման ու զարգացման և 4 միլիարդ 137 միլիոն ռուբլի բնակչությունից գանձվող գյուղատնտեսական հարկի իջեցման համար։

Ընթացիկ տարում գյուղատնտեսության զարգացման համար ինչպես պետական բյուջեով, այնպես էլ ի հաշիվ պետական այլ միջոցների, պետության կողմից նախատեսված են ծախսեր մոտ 52 միլիարդ ռուբլի գումարով։ Այս տարի կոլտնտեսությունները պետությունից կստանան 3,5 միլիարդ ռուբլու երկարաժամկետ վարկեր հանրային տնտեսության զարգացման համար։ Իրենք՝ կոլտնտեսությունները, սեփական միջոցների հաշվին 1953 թվականին կկատարեն առնվազն 17 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ։

Պետական բյուջեում խոշոր գումար է հատկացված սոցիալական-կուլտուրական միջոցառումների համար։ Այդ նպատակով 1953 թվականին ծախսվելու է 129 միլիարդ 762 միլիոն 381 հազար ռուբլի, որից լուսավորության և կուլտուրայի գծով ծախսվելու է 62 միլիարդ 89 միլիոն 527 հազար ռուբլի։ Առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի գծով կատարվելու է 24,8 միլիարդ ռուբլու

ծախս։ Միաժամանակ լրացուցիչ կարգով մեկ միլիարդ 362 միլիոն 800 հազար ռուբլի գումար է հատկացված բնակչության առողջապահության գործի հետագա բարելավման, պոլիկլինիկաները, հիվանդանոցներն ու մյուս բուժ. հիմնարկները սարքավորմամբ, սպիտակեղենով և տնտեսական ինվենտարով ավելի լավ ապահովելու համար։

Բացի դրանից, սեսիան 2 միլիարդ 387 միլիոն ռուբլի հատկացրեց, որպեսզի բանվորները, ծառայողները հանգստյան սանատորիաներում և հանգստյան տներում, նրանց համար կառուցվեն նոր սանատորիաներ ու հանգստյան տներ, ինչպես նաև ամռան ընթացքում երեխաների համար անցկացվեն առողջացուցիչ միջոցառումներ։

Սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության գծով 1953 թվականին կատարվելու է 40 միլիարդ 96 միլիոն 794 հազար ռուբլու հատկացում։

Բյուջետային միջոցների հատկացումները ցույց են տալիս, որ բյուջեի ծախսերի մեծ մասը նախատեսված է ժողովրդական տնտեսության ֆինանսավորման և սոցիալ-կուլտուրական պահանջների համար, որովհետև սոցիալիզմի հիմնական էկոնոմիկական օրենքն է ամբողջ հասարակության նյութական և



կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման ապահովումը՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով։

Պետական բյուջեն արտացոլում է պարտիայի և կառավարության մշտական հոգատարությունը ժողովրդի բարօրության, նրա նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման մասին։

«Անհետաձգելի խնդիրն այն է,— ասաց Գ. Մ. Մալենկովը Գերագույն Սովետի սեսիայում,— որ երկու-երեք տարվա ընթացքում խիստ բարձրացվի բնակչության ապահովվածությունը պարենային ու արդյունաբերական ապրանքներով՝ մսով ու մսամթերքներով, ձկով ու ձկնամթերքներով, յուղով, շաքարով, հրուշակեղենով, գործվածքներով, հագուստեղենով, կոշկեղենով, ամանեղենով, կահույքով և կուլտուր-կենցաղային ու տնային գործածության այլ առարկաներով, զգալիորեն բարձրացվի բնակչության ապահովվածությունը ժողովրդական սպառման բոլոր ապրանքներով»։

Պետական բյուջեում նախատեսված է 43 միլիարդ 204 միլիոն ռուբլի 1953 թվականի ապրիլի 1-ից անցկացված պարենային և

արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների իջեցման համար, որը բնակչությանը ապահովում է տարեկան ավելի քան 46 միլիարդ ռուբ. ավելի օգուտ։

Ընդհանուր առմամբ բնակչությունը ընթացիկ տարվա բյուջեի հաշվին կստանա 192 միլիարդ ռուբլի, որ կազմում է բյուջեի բոլոր ծախսերի ավելի քան 36 տոկոսը՝ անցյալ տարվա 147 միլիարդ ռուբլու դիմաց։

Արտադրության սոցիալիստական եղանակի հիմնական նպատակը ոչ թե շահույթն է, այլ մարդը իր պահանջմունքներով, նրա նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարումը։

Մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքներից մեկը՝ դա բնակարանն է։ Մեր պարտիան ու կառավարությունը մշտապես հոգ են տանում, որպեսզի ամբողջ հասարակությանն ապահովեն կուլտուրական և գեղեցիկ բնակարաններով, որի համար մեր երկրում իրագործվում է բնակարանային և կոմունալ մեծ շինարարություն։

1953 թվականի բյուջեով, անցյալ տարվա համեմատությամբ, 25 տոկոսով ավելի շատ միջոցներ է նախատեսված պետական բնա-



կարանային շինարարության ծավալը ավելացնելու համար։

Պետական բյուջեում պաշտպանության համար ծախսերը նախատեսված են 110,2 միլիարդ ռուբլու գումարով, որը կազմում է բյուջեի բոլոր ծախսերի 20,8 տոկոսը՝ 1952 թվականի 23,6 տոկոսի դիմաց։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտապես հոգատարություն են ցուցաբերում մեր երկրի Զինված Ուժերի ամրապնդման համար, որպեսզի ապահովվի մեր Հայրենիքի անվտանգությունը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան հաստատեց միութենական ռեսպուբլիկաների բյուջեները, որտեղ ցայտուն կերպով դրսեվորված է պարտիայի և կառավարության մշտական հոգատարությունը եղբայրական ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի զարգացման վերաբերյալ։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ մեր երկրի ժողովուրդների միջև ամրապնդվել է եղբայրական փոխօգնությունն ու համագործակցությունը, ՍՍՌՄ ժողովուրդները հասել են քաղաքական, տնտեսական և կուլտուրական ծաղկման։

Այդ փայլուն կերպով արտահայտվում է եղբայրական ռեսպուբլիկաների բյուջեներում, որոնց եկամուտները և ծախսերը տարեցտարի անշեղորեն աճում են:

ՍՍՌՄ Պետական բյուջեի ընդհանուր ծավալում միութենական ռեսպուբլիկաների բյուջեները 1953 թվականի համար հաստատված են 102,6 միլիարդ ռուբլի գումարով, այդ թվում ռեսպուբլիկական բյուջեների գծով՝ 31,2 միլիարդ ռուբլի և տեղական բյուջեների գծով՝ 71,4 միլիարդ ռուբլի: 1952 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկաների բյուջեները կաճեն գրեթե հինգ միլիարդ ռուբլով:

Նոր բյուջեի մեջ մարմնավորված է Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, որն ուղղված է մեր բազմազգ սոցիալիստական Հայրենիքի հզորության ուժեղացմանը և Սովետական Միության բոլոր ժողովուրդների մշտական աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարմանը:

1953 թվականի ՍՍՌՄ Պետական բյուջեն լիովին ապահովում է ժողովրդական տնտեսության հետագա նոր զարգացումը, արդյունաբերության, գյուղատնտեսության հետագա վերելքը:

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԵՏ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները հոյակապ հեռանկարներ են բացել մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա բուռն ծաղկման ու առաջընթացի համար:

Համագումարի առաջադրած խնդիրները հաջող իրականացնելու գործում պարտիական կազմակերպությունների ձեռքում հզոր զենք է քաղաքական ագիտացիան: Իդեոլոգիական աշխատանքի այդ կարևոր ձևը պարտիական կազմակերպություններին հնարավորություն է տալիս ավելի ու ավելի ընդլայնելու և ամրապնդելու կապը մասսաների հետ, նրանց սիստեմատիկաբար պարզաբանելու Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումները: Քաղաքական ագիտացիան լավագույն միջոց է աշխատավորների ուժերն ամբողջապես ուղղելու պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներն անթերի կատարելու նպատակին:

Ստալինյան ռայոնի ագիտկոլեկտիվները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ իրենց աշխատանքի հիմքում դնելով պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, զգալիորեն բարելավել են աշխատավորների մեջ կատարվող ագիտացիոն աշխատանքը, որը դարձել է ավելի գործուն ու նպատակասլաց։

Քաղաքական ագիտացիայի կազմակերպման, ագիտատորներին օգնություն ցույց տալու ուսանելի փորձ ունի Երևանի Ծխախոտի ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը, որտեղ ագիտատորներ են առաջադրված ագիտացիոն-քաղաքական աշխատանքի փորձ ունեցող ընկերներ։ Այստեղ շաբաթական մեկ անգամ հրավիրվում է ագիտկոլեկտիվի սեմինար պարապմունք կամ հրահանգչական խորհրդակցություն, որտեղ ագիտատորները համապատասխան հրահանգավորում են ստանում։ Սեմինար պարապմունքներում լսվում են զեկուցումներ լավագույն ագիտատորների փորձի մասին, այդ առթիվ կազմակերպվում է մտքերի փոխանակություն և ամփոփվում ու ընդհանրացվում է առաջավորների փորձը։

Սեմինար պարապմունքներում հանդես



են գալիս ֆաբրիկայի տնտեսական ղեկավարները, պարտբյուրոյի անդամները, ռայկոմի պատասխանատու աշխատողները։ Նրանք ագիտատորներին տեղյակ են պահում այն առաջնահերթ խնդիրների մասին, որ դրված են ձեռնարկության, ռայոնի և ռեսպուբլիկայի առջև։

Ագիտատորների սեմինար պարապմունքներում և խորհրդակցություններում քննարկվում են ինչպես մեթոդական, այնպես էլ տեսական և քաղաքական հարցեր։ Այսպես, ընթացիկ տարում քննարկվել են հարցեր հետևյալ թեմաներով՝ «1952 թ. պլանների կատարման արդյունքները և ագիտատորների խնդիրները», «Ինչպես պատրաստվել և կազմակերպել զրույցներ պարտիայի 19-րդ համագումարի նյութերի շուրջը», «Դեմոկրատական ճամբարի ուժի հզորացումը և պայքարը խաղաղության ամրապնդման համար», «Վայնորեն ծավալել նախամայիսյան սոցիալիստական մրցությունը», «Տրնտեսել հումքը, օժանդակ նյութերը», «Կիրովցիների հայրենասիրական կոչը և ագիտատորների դերը», «ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի նյութերի մասին» և այլն։

Պարտիական կազմակերպությունը հա-

տուկ ուշադրություն է դարձնում յուրաքան-չյուր սեմինար պարապմունք նախապատրաստելու և արդյունավետ անցկացնելու վրա, որի շնորհիվ այդ պարապմունքներն անցնում են հետաքրքիր, գաղափարական բարձր մակարդակով։

Ֆաբրիկայի պարտկազմակերպությունը, օրինակ՝ «Խնայողաբար ծախսել նյութերը» թեման սեմինարում քննարկելու համար կազմակերպեց հատուկ բրիգադա, գլխավոր ինժեներ Մ. Գասպարովի ղեկավարությամբ, որը մանրամասնորեն ուսումնասիրեց հիմնական ցեխերի աշխատանքը, բացահայտեց նյութերի գերածախս թույլ տալու պատճառները, իսկ հետո այդ առթիվ զեկուցումով հանդես եկավ ագիտատորների սեմինար պարապմունքում։ Զեկուցողը կենդանի ու պատկերավոր օրինակներով ագիտատորներին ցույց տվեց, թե որոնք են ֆաբրիկայի առանձին տեղամասերում նյութերի գերածախսի պատճառները և միաժամանակ բացատրեց, թե ինչ հնարավորություններ կան հումքը և նյութերը տնտեսելու համար։

Նլույթ ունեցող ագիտատորները պատմեցին ցեխերի, հերթափոխությունների, բրիգադաների և առանձին առաջավորների աշխատանքի դրական փորձի մասին։ Այս բա-



նորից հետո ագիտատորները հիմք ընդունելով զեկուցումը և ելույթները, իրենց համար կազմեցին տվյալ թեմայի շուրջը անցկացվելիք զրույցի պլանը։ Ագիտատորները ստանալով անհրաժեշտ մեթոդական, տեսական օգնություն, ֆաբրիկայի բոլոր աշխատանքային տեղամասերում մասսայական-բացատրական աշխատանք ծավալեցին հումքի խնայողություն կատարելու ուղղությամբ։ Նրանք միաժամանակ սկսեցին բացահայտել այդ գործում տեղ գտած լուրջ թերությունները և հասան որոշակի արդյունքի։ Այսպես օրինակ՝ գլանակ լցնող ցեխի բանվորներ Մ. Գևորգյանը, Մ. Զիպչյանը, աշխատանքի ընթացքում շարունակ հումքի և օժանդակ նյութերի գերածախս էին տալիս, թերակատարելով օրվա առաջադրանքները։ Նույն ցեխի կոմունիստ ագիտատոր Ս. Սաղաթելյանը ետ մնացող այդ բանվորներին բացատրեց հումքի գերածախս տալու պատճառները, միաժամանակ ցույց տալով թե աշխատանքի առաջավորներն ինչ միջոցներով ու մեթոդներով են կատարում հումքի խնայողություն։ Նման ագիտացիոն աշխատանքի շնորհիվ Գևորգյանը և Զիպչյանը հուլիս ամսին զգալի չափով գերա-

կատարեցին իրենց պլանները և նրանցից յուրաքանչյուրը տնտեսեց 23-ական կիլոգրամ ծխախոտի հումք։

Նյութերի խնայողության վերաբերյալ ագիտատորների սեմինարը իր դրական արդյունքը տվեց նաև սիգարետի ցեխում։ Այստեղ ագիտատորներ Ն. Մարտիրոսյանի, Ա. Խաչատրյանի նպատակասլաց ու մոբիլիզացնող ագիտացիայի և առաջավոր փորձի սիստեմատիկ տարածման շնորհիվ բանվորներ Պ. Լիմոնջանյանը, Ա. Գյուլխասրյանը իրենց օրվա առաջադրանքը կատարում են 200—210 տոկոսով, տալով միայն գերազանց որակի արտադրանք։ Կիսամյակում նրանցից յուրաքանչյուրը տնտեսել է 420 կիլոգրամ ծխախոտ, 186 քառակուսի մետր սիգարետի թուղթ և այլ օժանդակ նյութեր։ Ցեխը կիսամյա պլանը կատարեց 117,8 տոկոսով և պլանից դուրս երկրին տվեց 153 միլիոն հատ սիգարետ, նույն ժամանակաշրջանում խնայեց 11 հազար քառակուսի մետր թուղթ և 10.795 կիլոգրամ ծխախոտի հումք։ Տնտեսված այդ հումքի հաշվին կարելի է պատրաստել ավելի քան 10 միլիոն հատ սիգարետ։

Պարտիայի 19-րդ համագումարի որոշումները պարզաբանելու և բանվորներին դրանց



կենսագործման համար մոբիլիզացնելու ուղղությամբ ֆաբրիկայի պարտիական կազմակերպության ծավալած քաղաքական-մասսայական աշխատանքի շնորհիվ կոլեկտիվը անցած 5 ամսվա առաջադրանքը, ըստ բոլոր տեսակների կատարել է ժամկետից շուտ, երկրին տալով մեկ միլիոն 380 հազար ռուբլու արտապլանային արտադրանք. միայն ինքնարժեքի իջեցման շնորհիվ ֆաբրիկան ունեցել է 350 հազար ռուբլու օգուտ։

Ագիտատորներին տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու գործում խոշոր դեր են կատարում պարտկաբինետը, Կիրովի անվան գործարանի և երկաթգծի գրադարանները։

Հատկապես ռայոնի փոքրաթիվ կազմակերպությունների ագիտատորներին կոնկրետ օգնություն ցույց տալու նպատակով ռայկոմի գրադարանում ամեն ամիս սիստեմատիկ կերպով հրավիրվում են սեմինար պարապմունքներ, ագիտատորների համար հաճախակի կազմակերպվում են դասախոսություններ արտադրական, քաղաքական և միջազգային դրության հարցերի շուրջը, ուսումնասիրվում, ընդհանրացվում և մասսայականացվում է լավագույն ագիտատորների աշխատանքի փորձը։ Այսպես, օրինակ՝

վերջերս ագիտատորների սեմինարում Ծխախոտի ֆաբրիկայի ագիտատոր Հ. Գասպարյանը պատմեց իր աշխատանքի փորձի մասին՝ զեկուցում տալով «Ինչպես եմ ես մասսայականացնում արտադրության առաջավորների փորձը և ինչ կոնկրետ արդյունքներ է տալիս նա» թեմայով։ Սեմինարը մըտածված ու բազմակողմանիորեն նախապատրաստելու շնորհիվ անցավ հետաքրքիր և բարձր մակարդակով։

Որպեսզի աշխատավորության շրջանում կատարվող ագիտացիոն աշխատանքը լինի ավելի բովանդակալից և ավելի նպատակասլաց, անհրաժեշտ է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմները սիստեմատիկ և որակյալ օգնություն ցույց տան ագիտատորներին։

Ագիտատորների սեմինարներում և խորհրդակցություններում անհրաժեշտ է, որ սիստեմատիկաբար հանդես գան պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողները, որոնք իրենց ելույթներով պետք է առաջ քաշեն ձեռնարկության, հիմնարկության առաջ դրված կոնկրետ խընդիրները և այն կապեն համապետական ընդհանուր խնդիրների հետ։

Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ
(ՀԿՊ Ստալինյան ռայկոմի քարտուղար)



# ԲՈՆՆԻ ՌԵՎԱՆՇԻՍՏՆԵՐԸ

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ Սովետական Միությունը վճռական, գլխավոր դեր կատարեց գերմանական իմպերիալիզմի ջախջախման գործում, թաղելով հիտլերյան Գերմանիայի պարագլուխների զառանցական պլանները, որոնք երազում էին համաշխարհային տիրապետություն նվաճելու, ամբողջ աշխարհում ֆաշիստական ռեժիմ հաստատելու մասին։

Սակայն այդ ավազակային պլանների խորտակումը ոչինչ չսովորեցրեց հիտլերյան ռազմամոլներին և գերմանական մոնոպոլիաների տերերին։ Դեռ պատերազմի ժամանակ, երբ բացահայտորեն նշմարվում էր հիտլերյան բանակի պարտությունը, գերմանական գլխավոր շտաբը ձեռնամուխ եղավ ռևանշի պլանների մշակմանը։ Հիտլերյան գեներալները, ընդ որում, հույսը դնում էին արևմտյան տերությունների կառավարող շրջանների օգնության վրա, որոնք շահագըրգռված են նոր ագրեսիվ պատերազմնե-

բով։ Արդեն 1944 թվականին ամերիկյան գեներալ Պատտոնը, որ առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգների ռազմական կցորդն էր Գերմանիայում, գերմանական գլխավոր հրամանատարությանը հասկացնել տվեց, որ նա ապագայում, զինված ուժերի վերածրնման դեպքում, կարող է հույս դնել ԱՄՆ-ի կառավարող շրջանների աջակցության վրա։

1945 թվականի ամռանը Պոտսդամի կոնֆերենցիայում որոշվեց արմատախիլ անել գերմանական ֆաշիզմը և միլիտարիզմը։ Պատերազմից հետո առաջին տարիներին ռևանշիստները սիրտ չէին անում դուրս ցցել իրենց գլուխները, իսկ Միացյալ Նահանգների կառավարող շրջանները՝ բացարձակորեն աջակցել նրանց։ Թե՛ սրանք և թե՛ նրանք վախենում էին վաղաժամ մերկացվելուց։ Այն ժամանակաշրջանի համար բնորոշ են հետևյալ խոսքերը, որ ասել է գերմանական նախկին ադմիրալ Ննիշը հիտլերյան բանակի ողջ մնացած ղեկավարների մի գաղտնի խորհրդակցությունում. «Մենք պետք է գործենք սուզանավի հրամանատարի նման— լողալ ջրի տակ, մինչև որ հասնի ջրի երես դուրս գալու պահը»։

Գերմանիայի արևմտյան օկուպացիոն գոտիները գերմանական ռազմամոլների հա-



մար ազատության վայր են դարձել։ Այն բանտերը և համակենտրոնացման ճամբարները, որտեղ գտնվում էին հիտլերյան պատերազմի հանցագործները, հանգստյան տների նման կարգի բերվեցին։ Այդ կուրորտ-ճամբարներում այնպիսի մարդիկ, ինչպիսին է, օրինակ, նախկին գեներալ Գալդերը, Սովետական Միության վրա հիտլերյան ոճրագործ հարձակման պլանի հեղինակը, իրենց «հիշողությունները» կազմելու անվան տակ կատարում էին ամերիկյան հրամանատարության ամեն տեսակ առաջադրանքները՝ ամփոփում էին իրենց տանուլ տված պատերազմի փորձը և ռազմական նոր արշավանքների պլաններ կազմում։ Ընդ որում՝ առանձնահատուկ ուշադրություն էր դարձվում գերմանական զինված ուժերի վերածնմանը։

1948 թվականի աշնանը ամերիկյան «Յունայտեդ Ստեյտս նյուս էնդ Ուորլդ ռիպորտ» ժուռնալը հաղորդում էր, որ ԱՄՆ-ի ռազմական մասնագետները մշակում են «քաղաքական նոր գիծ, որն ուղղված կլինի գերմանական զինված ուժերի վերականգնման նպատակին»։ Հետևապես՝ ԱՄՆ-ի կառավարող շրջանների կողմից թաքուն աջակցություն ցույց տալու և գերմանական ռազ-

մամուլների գաղտնի գործունեության շրջանը վերջացավ։ Նրանց «տուգանավը» սկսեց ջրի երես դուրս գալ։ Եվ երբ 1949 թվականի սեպտեմբերին ստեղծվեց արևմտա-գերմանական մարիոնետային պետությունը (որով կոպիտ կերպով խախտվեցին Պոտսդամի որոշումները) ռևանշիստական ուժերը գործողությունների լիակատար ազատություն ստացան։

Ինքը՝ այդ կառավարության գլուխ կանգնեցված Կոնրադ Ադենաուերը մոլի ռևանշիստ է։ Նա բացարձակորեն հայտարարեց, որ իր քաղաքականության նպատակը «Եվրոպայի Արևելքում նոր կարգի հաստատումն է» և անցյալ տարվա գարնանը պահանջում էր սորկացնել Լեհաստանը, Չեխոսլովակիան, Հունգարիան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները և հատկապես Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Անցյալ տարի սեպտեմբերին, հանդես գալով Արևմտյան Գերմանիայի կաթոլիկ երիտասարդության Քյոլնի համագումարում, նա կոչ արեց «խաչակրաց արշավանքի դուրս գալ Արևելքի դեմ»։

Իրենց պահանջների մեջ ոչ պակաս լկտի են նաև Ադենաուերի գործակիցները, որոնք, ի դեպ ասած, համարյա բոլորն էլ հիտլե-



րականներ են եղել։ Այսպես, նրա մինիստրներ Կայզերը և Զեեբոմը վերջերս հայտարարել են, թե անհրաժեշտ է Ավստրիան նորից միացնել Գերմանիային։ Բացի այդ երկրից, որն, ինչպես հայտնի է, իր ժամանակին հիտլերյան ագրեսիայի առաջին զոհը դարձավ, Կայզերը հավակնություն ունի գրավել Շվեյցարիայի մի մասը և ֆրանսիական արդյունաբերական մարզեր Էլզասն ու Լոթարինգիան։ Ադենաուերի խորհրդական նախկին գեներալ Գուդերիանը գտնում է, թե Գերմանիայի սահմանները պետք է հասցնել մինչև բուն Փարիզ։ Արևմտա-գերմանական կանցլերի ամենամերձավոր աշխատակիցներից մեկը՝ Խալշտեյնը, անցյալ տարվա գարնանը լինելով ԱՄՆ-ում, ավելի հեռուն է գնում, նա պահանջում էր ռազմական արշավանքը հասցնել «ընդհուպ մինչև Ուրալ»։

Հենվելով արևմտյան օկուպացիոն իշխանությունների աջակցության վրա, ռևանշիստները ձեռնամուխ են եղել կադրերի պատրաստմանը՝ գերմանական նոր զինված ուժերի համար։ Այդ կադրերը պատրաստվում են, նախ՝ զանազան ռազմական միավորումներում, որոնք քողարկվում են ոստիկանական զորամասերի և «բանվորական վաշտերի» անվան տակ, և, երկրորդ՝ այն բազմաթիվ ֆա-

շիստական միություններում ու կազմակերպություններում, որոնք սնկի նման բուսել են Արևմտյան Գերմանիայում։ Ֆրանսիական մամուլը դեռ մեկ տարի առաջ հաշվել էր, որ այնտեղ կան 36 այդպիսի միավորումներ։ Իսկ այժմ դրանց թիվը Արևմտյան Գերմանիայում հասնում է ավելի քան 50-ի։

Իսկ ո՞վքեր են մտնում այդ կազմակերպությունների մեջ և ո՞վ է նրանց ղեկավարում։ Դրանց մեջ մտնում են գլխավորապես նույն, մինչև վերջ չջախջախված հիտլերականները, որոնց համար պատերազմը, թալանը և բռնությունը արհեստ են դարձել։ Դրանց ղեկավարները պատերազմի այն հանցագործներն են, որոնց կուրորտ-բանտերից ազատ են արձակել արևմտյան տերությունների կառավարությունները։ Օրինակ՝ նախկին ֆելդմարշալ Կեսսելրինգը, որը Իտալիայի հիտլերյան օկուպացիայի ժամանակ ավելի 1500 մարդ գնդակահարելու հրամանը, դարձել է ամենախոշոր ռազմականացված ռևանշիստական կազմակերպություններից մեկի՝ «Պողպատե սաղավարտի» նախագահը։ Ֆրանսիական ժողովրդի դահիճ, Նորմանդիայի խժդժությունների հեղինակ գեներալ Ռամկեն, որը նույնպես այժմ ազատ է, առաջնորդում է «Ռազմական պարաշյուտիստ-



ների միությունը»։ Այսպես կոչված «Գերմանական երիտասարդության միությունը» իրենից ներկայացնում է հիտլերյան երիտասարդական կազմակերպության վերածնումը։ Գոյություն ունեն նաև այնպիսի «միավորումներ», ինչպես՝ «Հիտլերի նախկին թիկնապահների միությունը»՝ էսեսական գնդապետ Բեխելի գլխավորությամբ։

Ռևանշիստական բանդաների գործունեությունը ֆինանսավորում են ամերիկյան և գերմանական կապիտալիստական մոնոպոլիաների պարագլուխները։ Կրուպպը, Շախտը և մյուս մոնոպոլիստները այժմյան Արևմտյան Գերմանիայում գրավել են իրենց նախկին դիրքը։ Պատերազմական հանցագործությունների համար նախկինում դատվածներից շատերը ազատվել են բանտերից։ Նրանց է վերադարձված պատերազմների շնորհիվ դիզած հսկայական հարստությունը, և նրանք նորից զբաղվում են իրենց նախկին գործով՝ զենքերի արտադրությամբ։ Արդեն անցյալ ամառը, ինչպես խոստովանեց ԱՄՆ-ի նախկին գերագույն կոմիսար Մակկլոյը, Արևմտյան Գերմանիայում պատերազմի համար աշխատում էր 317 գործարան։

Մոտ մեկ տարի առաջ—վերստին խախ-

տելով Պոտսդամի որոշումները—Բոննում և Փարիզում ստորագրվեցին ռազմական պայմանագրեր, ըստ որոնց՝ արևմտա-գերմանական ռևանշիստները իրավունք են ստանում ստեղծելու իրենց զինված ուժերը՝ թվով 500 հազար մարդ (առաջին պահին): Այդ պայմանագրերի էությունը ամերիկյան ռադիո մեկնաբան Բրաունը արտահայտել է հետևյալ խոսքերով. «Ութ տարի առաջ Հիտլերի գեներալները մեր թշնամիներն էին, այժմ նրանք մեր դաշնակիցներն են»: ԱՄՆ-ի կառավարող շրջանների մտահղացմամբ արևմտա-գերմանական դիվիզիաները պետք է դառնան Ատլանտյան ագրեսիվ բլոկի զորքերի հարվածային ուժը: Այդ դիվիզիաները, ռազմական պայմանագրերի համաձայն, մտցվում են այսպես կոչված «եվրոպական բանակի» մեջ, որն իր հերթին մտնում է Ատլանտյան բլոկի զինված ուժերի մեջ:

Այս տարվա մարտին ռազմական պայմանագրերի ռատիֆիկացիան (վավերացումը) բունդեստագի (արևմտա-գերմանական պառլամենտի) կողմից՝ զարկ տվեց ռևանշիստների աշխուժացմանը: Նրանց հրատարակած թերթերը, օրինակ «Զոլդատենցեյտունգ»-ը, ուժեղացրին ուրիշների հողերը գրավելու իրենց կոչերը: Արևմտա-գերմանա-



կան մամուլը միայն մայիսի ընթացքում նշեց ռևանշիստական առնվազն 12 ժողով ու հավաքույթ, այդ թվում վերևում արդեն նշված «Պարաշյուտիստների միության», նախկին ռազմական նավաստիների, «Մեծ Գերմանիա» դիվիզիայի էսեսականների, լեռնային հրաձիգների համագումարները և այլն: Ռևանշիստական «Գերմանական պարտիայի» համագումարում հռետորները պահանջում էին ռազմական նոր արշավանքներ կազմակերպել, կատաղի զրպարտիչ հարձակումներ էին գործում դեմոկրատական երկրների դեմ և հանդես էին գալիս ընդդեմ այն բանի, որ միջազգային վիճելի հարցերը, այդ թվում և գերմանական հարցը լուծվի բանակցությունների միջոցով: Մոտավորապես նույնպիսի ճառեր էին արտասանվում Արևմտյան Գերմանիայի ռևանշիստական նաև մյուս հավաքույթներում:

Ադենաուերի ռևանշիստական կլիկը դիմում է ամենատար պրովոկացիաների, որպեսզի թույլ չտա, որ գերմանական հարցը լուծվի խաղաղ ճանապարհով:

Այդ էին ցույց տալիս հունիսի 17-ին Բեռլինում տեղի ունեցած իրադարձությունները: Արևմտա-գերմանական ռևանշիստների կողմից նախապատրաստված, ամերիկյան հե-

տախուզության կողմից զինված ֆաշիստական չարագործների ու մարդասպանների բանդաները ուղարկվել էին Բեռլինի դեմոկրատական սեկտորը՝ անկարգություններ կազմակերպելու, հարձակումներ գործելու և հրկիզումներ կատարելու համար։ Գերմանական ժողովրդի բախտից, Եվրոպայում խաղաղության գործի բախտից՝ օտարերկրյա վարձկանների ոճրագործ ավանտյուրան տապալվեց։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովրդական ուժերը վրճռական հակահարված հասցրին ռևանշիստական պրովոկատորներին և նրանց արտասահմանյան տերերին։

Բնական է, որ ռևանշիզմի խժդժությունները Արևմտյան Գերմանիայում տագնապ են առաջ բերում Եվրոպայի ժողովուրդների մեջ, որոնք համառ պայքար են մղում ագրեսիվ ռազմական պայմանագրերի դեմ։ «Եվրոպական բանակի» մասին պայմանագիրը ստորագրած վեց երկրներից միայն Արևմտյան Գերմանիան է ռատիֆիկացիայի ենթարկել այն։ Իտալիայում, Ֆրանսիայում, Բելգիայում, Հոլանդիայում և Լյուքսեմբուրգում ժողովրդական մասսաների ճնշման տակ տապալվում է այդ պայմանագրի ռատիֆիկացիան։



Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բուդապեշտում վերջերս տեղի ունեցած սեսիան արտահայտելով բոլոր խաղաղասեր ժողովուրդների կամքը, պահանջեց գերմանական հարցը լուծել խաղաղ ճանապարհով՝ բանակցությունների միջոցով և ստեղծել միասնական Գերմանիա, որտեղ թույլ չտալ, որ վերածնվի միլիտարիզմն ու ռևանշիզմը։ Հենց Գերմանիայի ժողովուրդը սեփական փորձով համոզվել է, որ ագրեսիվ պատերազմներից բարիք չկա։ Եթե առաջին համաշխարհային պատերազմից հետո ռևանշիզմը որոշ աջակցություն էր ստանում Գերմանիայի բնակչության որոշ խավերի կողմից, ապա այժմ գերմանացիների ճնշող մեծամասնությունը դեմ է նրան։ Ոչ մի պայմանագիր այնքան անժողովրդական չի եղել Գերմանիայում, ինչպես Բոննի և Փարիզի ռազմական պայմանագրերը։ Չնայած ադենաուերյան կառավարության ոստիկանական տեռորին, Արևմտյան Գերմանիայում աճում է ժողովրդական դիմադրությունը ընդդեմ այդ պայմանագրերի իրագործման, ընդդեմ վերազինման քաղաքականության։ Գերմանական ժողովուրդը պայքարում է միասնական խաղաղասեր Գերմանիայի համար, որտեղ տեղ չպետք է ունենա ռևանշիզմը։

Օ. ՆԱԿՐՈՒԻՆ

## ԹԱՆԿՈՒԹՅԱՆ ԱՃԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

✪ *Ամերիկայի Միացյալ Նահանգներում, պաշտոնական տվյալների համաձայն, վերջին հինգ տարիների ընթացքում հացի գները թանկացել են 28 տոկոսով, միսը՝ 26 տոկոսով, կաթինը՝ 18 տոկոսով։ ԱՄՆ-ի պրոֆմիությունների հաշվարկման համաձայն վերջին երկու և կես տարում կյանքի պայմանները թանկացել են 25 տոկոսով։*

✪ *Գների սիստեմատիկ թանկության պատճառով ամերիկյան բանվորների և մյուս աշխատողների աշխատավարձը չի բավարարում անգամ նրանց նվազագույն պահանջները։ Ամերիկյան բանվորուհի Մերի Սոկետոին ասում է. Նայեցեք դպրոցում բանվորների երեխաներին, նրանցից ոչ մեկը ոչինչ չունի նախաճաշի համար, նրանցից ոչ մեկը չունի տաք հագուստ։*



✪ *Ամերիկյան բանվորները աշխատում են ուժից վեր, մոնոպոլիստները նրանց շահագործում են անզուսպ կերպով և ստանում միլիարդավոր դոլարների շահույթ։ 1939 թվականին ԱՄՆ-ի մոնոպոլիստները յուրաքանչյուր բանվորից ստացել են միջին հաշվով մոտ 300 դոլար շահույթ, իսկ 1952 թվականին՝ 1.800 դոլար, այսինքն 6 անգամ ավելի շահույթ են ստացել, քան նախապատերազմյան 1939 թվականին։*

✪ *Վերջին երեք—չորս տարիներում բնակարանային վարձը ԱՄՆ-ում բարձրացել է 40 տոկոսով։ Եթե մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ԱՄՆ-ում բնակարանային վարձը կազմում էր բանվորի ամսական աշխատավարձի մեկ քառորդը, ապա ներկայումս այն կազմում է ամսական աշխատավարձի մեկ երրորդը, շատ անգամ՝ ամբողջ ընտանիքի բյուջեի կեսը։*

✪ *Անգլիայում թանկությունը արագ աճում է։ Նախապատերազմյան ժամանակաշրջանի հետ համեմատած մսի գները թանկացել են 5 անգամ, ձվինը՝ 6 անգամ, բանջարեղենինը՝ 6 անգամ։ Գների թանկության հետ*

մեկտեղ կրճատվել են պարենային ապրանքների քարտերով տրվող նորմաները: Անգլիայում մինչև այսօր էլ գոյություն ունի քարտային սիստեմ:

✪ Շաբաթական մսի նորման, որ ներկայումս ստանում է անգլիացին, իր չափով մի քիչ ավելի է լուցկու տուփից: Գոյություն ունեցող մթերային քարտերով անգլիացին շաբաթական ստանում է՝ միս 250 գրամ, մարգարին՝ 113 գրամ, յուղ՝ 57 գրամ, պանիր՝ 28 գրամ և ձու՝ երկու հատ:

Շատ բանվորների ընտանիքներ չեն կարողանում գնել անգամ այդ նորմաներով աննշան հասանելիքը գների թանկության պատճառով:

✪ Անգլիայում հարյուր հազարավոր ընտանիքներ չունեն բնակարան. միայն Գլազգոյում բնակարանազուրկ ընտանիքների թիվը հասնում է 40 հազարի:

Բնակարանային վարձը այնքան բարձր է, որ բնակարան վարձողները չեն կարողանում վճարել: Անգլիական մամուլի հաղորդագրության համաձայն Գլազգոյում տնատերերը պահում են հատուկ ջարդարարների բանդա՝ ավազակախումբ, որոնք ծեծում, ջարդում և շատ անգամ սպանում են նրանց, ովքեր չեն կարողանում վճարել բնակարանի վարձը:



✪ Ֆրանսիայում պարենային մթերքների գները նախապատերազմյան շրջանի հետ համեմատած թանկացել են 33 անգամ, հագուստինը՝ ավելի քան 50 անգամ, ջեռուցմանը և լուսավորությանը՝ 21 անգամ, իսկ բանվորների ռեալ աշխատավարձը 1952 թվականին կազմում էր նախապատերազմյան ժամանակաշրջանի կեսից էլ պակաս: Ֆրանսիական մոնոպոլիաների շահույթները վերջին չորս տարիների ընթացքում ավելացել են 6 անգամ:

✪ Պաշտոնական, նվազեցված տվյալների համաձայն՝ 1950 թվականից հետո Ավստրիայում թանկությունը աճել է 44 տոկոսով, Արգենտինայում՝ 66 տոկոսով, Մեքսիկայում՝ 25 տոկոսով, Նորվեգիայում՝ 66 տոկոսով, Ֆինլանդիայում՝ 25 տոկոսով, Ճապոնիայում՝ 34 տոկոսով:

Կապիտալիստական երկրներում աշխատավորական մասսաները գտնվում են ծանր պայմաններում և նրանց դրությունը է՛լ ավելի կրիտիկական է դառնում կյանքի պայմանների թանկության սիստեմատիկ աճման հետևանքով:

---

# ՊԼԱՆՆԵՐ, ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՍՌՄ 1953 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

*1. Մեր երկրի ժողովրդական տնտեսության աճը պայմաններ ստեղծեց ՍՍՌՄ 1951—52 թվականների Պետական բյուջեի հաջող կատարման համար։*

*2. ՍՍՌՄ 1951 և 1952 թվականների Պետական բյուջեի և ժողովրդական տնտեսության պլանների հաջող կատարումը վառ կերպով վկայում է, որ մեր երկիրը վստահորեն ընթանում է իր սոցիալիստական էկոնոմիկայի հետագա հզոր վերելքի, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի սիստեմատիկ բարձրացման ուղիով։*

*3. 1953 թվականի Պետական բյուջեն լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության վառ դրսևորումն է։*

*4. Նոր բյուջեն լիովին ապահովում է ժողովրդական տնտեսության զարգացման առաջադրանքների ֆինանսավորումը հինգերորդ հնգամյակի երրորդ տարում։*

*5. Նոր բյուջեն նշանավորում է սովետական բոլոր ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական հե-*



*տագա ծաղկում, մեր ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի նոր վերելք։*

*6. Սովետական Միության բյուջեում մարմնավորված է Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, որն ուղղված է մեր սոցիալիստական Հայրենիքի հզորության ուժեղացմանը և Սովետական Միության բոլոր ժողովուրդների նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարմանը։*

*7. Սովետական պետության միջոցների խնայողության խստագույն ռեժիմի համար ծավալված ամենօրյա պայքարը Պետական բյուջեի կատարման կարևորագույն պայմանն է։*

*8. 1953 թվականի Պետական ֆինանսական պլանների կատարման համար պայքարելը մեր երկրի բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի հայրենասիրական պարտքն է։*

## II

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԿԻ ՄԱՍԻՆ ՕՐԵՆՔԸ

*1. Գյուղատնտեսական հարկի մասին նոր Օրենքը ՍՍՌՄ ժողովրդի նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անդուլ հոգատարության վառ արտահայտությունն է։*

*2. Գյուղատնտեսական հարկի վերաբերյալ նոր Օրենքը կնպաստի կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդմանը։*

3. Գյուղատնտեսական հարկի մասին օրենքը կնպաստի գյուղատնտեսության հետագա զարգացմանը և կոլտնտեսականների եկամուտների բարձրացմանը:

4. Գյուղատնտեսական հարկի մասին Օրենքը նոր արտոնություններ է տալիս ՍՍՌՄ բնակչության զգալի մասին:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


1. Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ — *Ճառ* ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում: *«Ս. Հ.», 1953 թ. օգոստոսի 9-ի համարում:*

2. Ա. Գ. ԶՎԵՐԵՎ — *Զեկուցում* «ՍՍՌՄ 1953 թվականի Պետական բյուջեի մասին և ՍՍՌՄ 1951—52 թվականների Պետական բյուջեի կատարման մասին»: *«Ս. Հ.», 1953 թ. օգոստոսի 6-ի համարը:*

3. Օրենք Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության 1953 թվականի Պետական բյուջեի մասին: *«Ս. Հ.», 1953 թ. օգոստոսի 11-ի համարը:*

4. Ժողովուրդների անխախտ բարեկամության վառ ցույցը: *(«Պրավդա»-ի օգոստոսի 7-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.» օգոստոսի 8-ի, համարում:*





5. Սովետական երկրի հոյակապ խնդիրները, *(«Պրավդա»-ի օգոստոսի 10-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 11-ի համարում):*

6. Օրենք գյուղատնտեսական հարկի մասին: *«Ս. Հ.», 1953 թվ. օգոստոսի 11-ի համարը:*


---


Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՏ 03422 Պատվեր № 726 Տիրաժ 9100*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.:*